## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

### Նյութեր զրույցների համար



### Ագիտացիոն աշխատանքի փորձից



### Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսում



### Միջազգային թեմաներ



### Տեղեկատու բաժին



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78։





# ՆԱԽԱՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ

Պանծալի շատ տրադիցիաներ ունի սովետական ժողովուրդը։ Նա ամեն տարի ի պատիվ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հերթական տարեդարձի ծավալում է համաժողովրդական սոցիալիստական մրցություն՝ տարեկան արտադրական պլանները գերազանց ցուցանիշներով կատարելու համար։

Այժմ նույնպես, ինչպես ամեն տարի, մեր մեծ երկրի բազմահազար քաղաքներում և գյուղերում, գործարաններում ու ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում և ամենուրեք ծավալվում է նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցությունը։ Բանվորները, ծառայողներն ու գյուղատնտեսության աշխատողները մտնելով նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության մեջ, ձգտում են աշխատանքային նոր հաջողություններով նշանավորել Մեծ Հոկտեմբերի 39-րդ տարեդարձը։





Նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության ընթացքում է՛լ ավելի է ծավալվում քաղաքի և գյուղի աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունը հարազատ Կոմունիստական պարտիայի XX համագումարի պատմական որոշումները մինչև վերջը կենսագործելու համար։

Ի պատիվ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի, ինչպես Սովետական Միության մյուս ռեսպուբլիկաներում, այնպես էլ մեր ռեսպուբլիկայում բուռն թափով ծավալվում է նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցությունը։

Ռեսպուբլիկայի աշխատավորներն այժմ ունեն միայն մեկ նպատակ՝ հաղթանակով դուրս գալ մրցությունից և երկրին տալ ավելի շատ արդյունաբերական արտադրանք ու գյուղատնտեսական մթերքներ։

Այս օրերին ագիտատորների առաջնահերթ խնդիրն է՝ պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ լայնորեն ծավալել նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցությունը և այն դարձնել ավելի մասսայական։ Թող մրցեն բոլորն անխտիր՝ բրիգադները-բրիգադների, ձեռնարկությունները-ձեռնարկությունների, կոլտնտեսություն-



ներն-կոլտնտեսությունների և բոլոր աշխատողները միմյանց հետ։

Ագիտատորը, որտեղ էլ որ նա աշխատելիս լինի, պետք է հիշի, որ ինքը սոցիալիստական մրցության կազմակերպիչն է։ Ուստի նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցությունը արտադրական ձեռնարկություններում հարկավոր է կազմակերպել այնպես, որ այն բարձրացնի տվյալ գործարանի կամ ֆաբրիկայի տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշները, որ մրցության միջոցով ձեռնարկությունը ոչ միայն կատարի ու գերակատարի տարեկան պլանները, այլև բարձրացնի արտադրանքի որակը և իջեցնի նրա ինքնարժեքը։ Այդ գործում խրախուսելի փորձ ունեն Երևանի ծխախոտի ֆաբրիկայի ագիտատորները։ Նրանց օգնությամբ ֆաբրիկայի բանվորներն ստանձնել են մոբիլիզացնող պարտավորություններ՝ արտադրանքի որակը բարձրացնելու, հումքը և էլեկտրաէներգիան տնտեսելու համար։ Միանգամայն ճիշտ է վարվում ֆաբրիկայի ագիտկոլեկտիվի ղեկավար ընկ. Ա. Ենգոյանը, երբ ագիտկոլեկտիվի նիստերում, ագիտատորների ակտիվ մասնակցությամբ, հաճախակի ամփոփում է մրցության ընթացքը։ Նախ այդ միջոցով ագիտատորները ժամանակին և առաս

ավյալներ են ստանում մրցության ընթացքի վերաբերյալ, ապա իրենց հերթական զրույցներում ունկնդիրներին տեղյակ են պահում, թե ով ինչպես է կատարում իր խոստումը, ովքե՞ր են մրցության առաջավորները և ինչպես են աշխատել նրանք, որ հասել են աչքի ընկնող հաջողությունների։

Յուրաքանչյուր ագիտատոր ագիտացիոն աշխատանքի իր փորձից լավ գիտի, որ ունկնդիրների վրա ուժեղ է լինում դրական օրինակի ազդեցությունը։ Հետևաբար, նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցությունն ավելի արդյունավետ կլինի, եթե մեր ագիտատորները պարբերաբար ագիտացիոն զրույցի նյութ դարձնեն աշխատանքի առաջավորների դրական փորձը, ունկնդիրներին մանրակրկիտ կերպով պարզաբանեն առաջավոր փորձի էությունը, մրցության առաջավորների աշխատանքի այն մեթոդներն ու ձևերը, որոնց միջոցով նրանք արդյունաբերական ձեռնարկություններում գերակատարել են իրենց արտադրական նորմաները, բարելավել արտադրանքի որակը, տնտեսել են հումք, վառելիք, օժանդակ նյութեր կամ էլեկտրաէներգիա, իսկ կոլտնտեսություններում բարձրացրել են գյուղատնտեսական



կուլտուրաների բերքատվությունը և անասունների մթերատվությունը։

Որպեսզի մրցման առաջավորների փորձը մասսայականացնելիս ագիտացիոն զրույցը լինի հետաքրքիր ու բովանդակալից և մանավանդ նպատակասլաց, անհրաժեշտ է խորը թափանցել ձեռնարկության կամ կոլտնտեսության էկոնոմիկայի մեջ, ամենայն մանրամասնությամբ իմանալ նրանց ներքին հնարավորությունները, դեռևս չօգտագործվող ռեզերվները և գործնական օգնություն ցույց տալ ունկնդիրներին այն արդյունավետ օգտագործելու համար։ Այդ գործում օրինակելի աշխատանք են կատարում Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանի ագիտատորները։ Շնորհիվ այն բանի, որ պարտկոմիտեի օգնությամբ նրանք իրենց սեմինարներում հաճախակի ուսումնասիրում են գործարանի էկոնոմիկան, ագիտատորները կարողանում են գործնական օգնություն ցույց տալ ունկնդիրներին՝ ստանձնած պարտավորությունները լիովին կատարելու, ներքին ռեզերվները հայտնաբերելու և այն արդյունավետ օգտագործելու համար։

Նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության կարևորագույն խնդիրներից մեկն էլ այն է, որ ընկերական օգնության միջո-

ցով աշխատանքում ետ մնացողներին հասց-
նեն մրցության առաջավորներին։ Գործա-
րանների ու ֆաբրիկաների, կոլտնտեսու-
թյունների ու մեքենա-տրակտորային կա-
յանների առօրյա կյանքից կարելի է բերել
բազմաթիվ օրինակներ, երբ ընկերական օգ-
նության միջոցով ագիտատորներին հաջող-
վել է աշխատանքում ետ մնացողներին
հասցնել առաջավորներին։

Մեր երկիրն ընթանում է տեխնիկական
պրոգրեսի ուղիով։ Սովետական առաջավոր
գիտության ու տեխնիկայի շնորհիվ մեր
ձեռնարկությունները անընդհատ զինվում են
բարձր կատարելության հասած ժամանա-
կակից տեխնիկայով։ Սոցիալիստական
գյուղատնտեսությունը նույնպես օրեցօր
հագեցվում է նոր տեխնիկայով։ Ինքնին
հասկանալի է, թե այժմ ՍՍՌՄ ժողովրդա-
կան տնտեսության հետագա զարգացման
համար ինչպիսի վիթխարի նշանակություն
ունի մեքենաները լրիվ կարողությամբ օգ-
տագործելը, նոր տեխնիկայի արագ յուրա-
ցումն ու արմատավորումն արտադրության
մեջ։

Մտնելով նախահոկտեմբերյան սոցիալիս-
տական մրցության մեջ արդյունաբերության
և գյուղատնտեսության բազմաթիվ աշխա-



տողներ հիանալի օրինակ են ցույց տալիս
մեքենաներն ու սարքավորումներն առավել
արդյունավետ օգտագործելու ուղղությամբ։

Մեր ագիտատորների խնդիրն է նրանց
փորձը նույնպես ընդհանրացնել ու տարածել
նախահոկտեմբերյան սոցիալիստական մըր-
ցության մասնակիցների լայն շրջանում, որ-
պեսզի նոր տեխնիկան օգտագործվի լրիվ
կարողությամբ, նա մեր երկրին տա այն-
քան բարիք, որքան հնարավոր է ստանալ
նրանից։

Ագիտատորների խնդիրն է նաև՝ ժամանա-
կին բացահայտել ու վերացնել նախահոկ-
տեմբերյան սոցիալիստական մրցության
գործում եղած թերությունների ու բացերը։

Վերջերս ՀԱՄԿԽ-ում տեղի ունեցած արհ-
միությունների կենտրոնական կոմիտեների
աշխատողների խորհրդակցությունում նշվեց,
որ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի 39-րդ տա-
րեդարձի պատվին ծավալվող սոցիալիստա-
կան մրցությունը որոշ ձեռնարկություննե-
րում դեռ անհրաժեշտ աջակցություն չի
գտնում արհմիութենական կազմակերպու-
թյունների և տնտեսական ղեկավարների
կողմից։

Բացի այդ լինում են այնպիսի դեպքեր,
երբ ստանձնած պարտավորությունները

կրում են ձևական բնույթ, չեն ունենում մոբիլիզացնող նշանակություն կամ ձգձգվում և ժամանակին չի կատարվում տրված խոստումը։

Որպեսզի նման դեպքեր տեղի չունենան և նախահոկտեմբերյան սոցիալիստական մըրցության միջոցով ձեռք բերվեն նոր հաջողություններ, հարկավոր է ագիտատորների մշտական օգնությունը մրցության մասնակիցներին՝ ինչպես մոբիլիզացնող պարտավորություններ ստանձնելու, այնպես էլ ըստանձնած պարտավորությունները բարձր ցուցանիշներով կատարելու գործում։

Ագիտատորը պետք է օգնի պարտիական և պրոֆմիութենական կազմակերպություններին՝ պարբերաբար ամփոփելու նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության ընթացքը։ Դա լավագույն միջոց է մրցությունն ավելի նպատակասլաց դարձնելու համար։

Ամեն ջանք գործ դնենք և նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցությունից լիակատար հաղթանակով դուրս գանք։

---

# ԸՆՏԱՆԻՔԻ ԵՎ ԴՊՐՈՑԻ ՀԱՄԱՏԵՂ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԵՐԵԽԱՆԵՐԻ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԳՈՐԾՈՒՄ

Գ. ԱՂԵԿՅԱՆ
Հայկական ՍՍՌ դպրոցի վաստակավոր ուսուցիչ

Մեր երկրում երեխաները շրջապատված են Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ջերմ հոգատարությամբ։ Ստեղծված են այն բոլոր պայմանները, ինչ անհրաժեշտ է երեխաների կյանքըն ուրախ ու երջանիկ դարձնելու համար։

Երեխաների կրթության ու դաստիարակության նկատմամբ ցուցաբերվող այդ հոգատարությունը երբեք չի վերացնում ծնողների պատասխանատվությունը իրենց դպրոցական զավակների դաստիարակության գործում։ Սովետական երկրում դպրոցի և ընտանիքի միջև հակասություններ գոյություն չունեն։ Դպրոցի և ընտանիքի նպատակը միասնական է։ Թե՛ ընտանիքը և թե՛ դպրոցը ձգտում են կենսագործել պետության

կողմից առաջադրված հիմնական խնդիրները՝ դաստիարակել բազմակողմանիորեն զարգացած, Կոմունիստական պարտիայի գործին և իրենց Հայրենիքին նվիրված ապագա քաղաքացիներ։

Այժմ խոսենք այն մասին, թե ծնողները ինչ պարտականություններ ունեն երեխաների դաստիարակության գործում։ Ծնողների առաջնահերթ պարտականությունն է՝ հոգալ երեխաների առողջության մասին, կազմակերպել նրանց սնունդը-այնպես, որ ապահովվի երեխաների նորմալ աճը, ֆիզիկական զարգացումը։ Երեխաների կերակրման համար սահմանել որոշակի ժամեր։ Հետևել, որ երեխաների մարմինը, նրանց հագուստը, անկողինը, գործածվող իրերը միշտ մաքուր լինեն։ Ծնողը պետք է լավ հիշի, որ ընտանիքում սահղծված որոշակի կարգ ու կանոնը երեխային դարձնում է կարգապահ, կազմակերպված։ Հակառակ դեպքում երեխաների մոտ առաջ է գալիս թափթփվածություն և անկազմակերպվածություն։ Ուստի անհրաժեշտ է երեխաների համար սահմանել ռեժիմ և հետևել նրա կատարմանը։ Ռեժիմը՝ դա երեխայի աշխատանքի ու հանգստի ճիշտ կազմակերպման միջոցն է։ Ռեժիմ սահմանելիս հաշվի պետք է առնել երեխաների տա-



րիքը և ընտանիքի հարմարությունները, իսկ այնուհետև այն խստորեն պահպանել և հետևողականորեն կիրառել այնքան ժամանակ, որ դա երեխայի համար դառնա սովորություն, նույնիսկ կենսական պահանջ։

Դաստիարակության մյուս կարևոր պայմաններից մեկը՝ երեխային ճիշտ ճանաչելն է։ Ի՞նչ է նշանակում ճանաչել երեխային։ Այդ նշանակում է իմանալ թե ինչպես է աճում ու զարգանում նա, ինչ հետաքրքրություններ և հակումներ ունի։

Ծնողների կարևոր պարտականություններից մեկն էլ երեխաների ուսումնական աշխատանքին հսկելն է և անհրաժեշտ օգնություն ցույց տալը։

Դպրոցականի հիմնական աշխատանքը ուսումն է, սովորելը, որի ընթացքում նա զինվում է անհրաժեշտ գիտելիքներով, ձևավորվում է նրա աշխարհայացքը և նրա մեջ մշակվում են հմտություններ։ Ուսուցումը հիմնականում տարվում է դպրոցում։ Որպեսզի ուսումը չմնա թերի, երեխան ինքնուրույն աշխատանքով պետք է լրացնի այն։ Երեխաների ինքնուրույն աշխատանքը՝ ուսուցիչների կողմից տրված տնային հանձնարարությունների կատարումն է։ Ծնողները պետք է նըպաստեն դրա կատարմանը։ Ամենից առաջ

տանը երեխայի համար ստեղծեն աշխատանքի նպաստավոր պայմաններ, օրինակ, առանձին սեղան կամ անկյուն։ Բացի այդ, ծնողը պետք է իմանա, թե երեխան ինչ հանձնարարություն է ստացել և հսկի այդ հանձնարարության կատարմանը։ Հաճախ երեխաները գերագնահատում են իրենց գիտելիքները։ Բավական է, որ դասի մեջ նրանք որևէ ծանոթ բան նկատեն, նրանց թվում է, թե իրենք դասը գիտեն։ Այդ պատճառով շատ երեխաներ դասերը կանոնավոր չեն սովորում։ Անթույլատրելի է, երբ առանձին ծնողներ իրենք են կատարում երեխայի աշխատանքը։

Երեխայի ուսումնական աշխատանքը հսկողության տակ պահելու, երեխաների պատասխանատվությունը բարձրացնելու նպատակով, ծնողները սիստեմատիկ կապ պետք է պահպանեն դասղեկների և ուսուցիչների հետ։

Ծնողների առավել կարևոր խնդիրներից մեկը՝ դա երեխաների բարոյական դաստիարակությունն է։ Պետք է վաղ հասակից երեխաների մեջ պատվաստել մարդկային լավագույն հատկություններ, օրինակ, սովետական հայրենասիրություն, ինտերնացիոնալիզմ, աշխատանքի և հանրային սեփականու-



թյան նկատմամբ սոցիալիստական վերաբերմունք, գիտակցական կարգապահություն, ազնվություն, ճշմարտասիրություն, համեստություն, արիություն, հաստատակամություն և այլն։

Յուրաքանչյուր ծնող պետք է լավ հիշի, որ երեխաների դաստիարակության վճռական միջոցը ծնողների, մեծահասակների անձնական օրինակն է։ Ամենից առաջ ծնողները իրենք պետք է ազնվորեն կատարեն քաղաքացու իրենց պարտականությունները, լինեն պարտաճանաչ, որպեսզի երեխաներն իրենց ամենամոտիկ մարդկանց մեջ տեսնեն արժանավոր օրինակ։ Չպետք է մոռանալ, որ երեխաներին հատուկ է ընդօրինակելը, նրանք նմանվելու մեծ ձգտում ունեն։ Մյուս կողմից էլ, երեխաները շատ սրատես են, նրանք տեսնում ու լսում են այն ամենը, ինչ կատարում են ծնողները, մեծերը։ Այդ կապակցությամբ Ա. Ս. Մակարենկոն գրել է. «Նախքան դուք կսկսեք դաստիարակել Ձեր երեխաներին, ստուգեցեք ձեր սեփական վարքը»։ Հայ մեծ մանկավարժ Խ. Աբովյանը գտնում էր, որ մեկ անգամ լավ օրինակ տալը շատ բան կտեսնի, քան մեկ կարսս խրատը։

Այսպիսով ծնողների, ընտանիքի մեծահասակ անդամների բարոյական օրինակները

երեխաների դաստիարակության հիմնական միջոցներն են։

Ծնողի անձնական օրինակի դաստիարակիչ դերը կախված է հենց իր՝ ծնողի հեղինակությունից։ Ծնողի հեղինակությունը ըստեղծվում է նրա հասարակական գործունեությամբ, նրա ամբողջ կյանքով, որի համար ծնողները իրենց գործունեության վրա պետք է առանձնակի ուշադրություն դարձնեն։

Երեխաների կոմունիստական դաստիարակության հարցում կարևոր տեղ ունի ազնվության և ճշմարտասիրության դաստիարակությունը։ Որոշ ծնողներ անտեսելով իրենց անձնական օրինակի դաստիարակիչ դերը, շատ հաճախ, իրենք էլ չզգալով, վատ օրինակ են ծառայում երեխաներին, տեղիք տալով խաբեության, ստախոսության կամ կեղծավորության։ Հարևանը երեխայի ներկայությամբ կաթսա կամ որևէ իր է խնդրում, իսկ երեխայի մայրը մերժում է, պատճառաբանելով, թե կաթսան տանը չէ կամ փչացած է։ Երեխաները տեսնում են, որ մայրը հարևանին խաբեց, իրենք էլ այդպես են վարվում դասընկերների հետ։ Ընտանիքից պահանջվում է լինել ազնիվ, ճշմարտախոս և անկեղծ։

Երեխաների դաստիարակության կարևոր



միջոցներից մեկը՝ նրանց ֆիզիկական աշխատանքի կազմակերպումն է։

Սովետական դպրոցի և ընտանիքի առջև դրված է աշխատավոր մարդ դաստիարակելու կարևորագույն խնդիրը, աշխատանքային դաստիարակության խնդիրը։

Ծնողները պետք է ընտանիքում վաղ հասակից կազմակերպեն տղաների և աղջիկների ֆիզիկական աշխատանքը, երեխաներին իրենց ուժերի ներածին չափ մասնակից դարձնեն տնտեսության մեջ կատարվող առօրյա գործերին, հիշելով, որ միայն աշխատանքի միջոցով կարելի է երեխաների մեջ լավագույն հատկություններ և ունակություններ զարգացնել։

Ծնողի խնդիրն է՝ ճանաչել ոչ միայն իր երեխային, այլ նաև նրա ընկերներին, քանի որ ընկերական շրջապատը իր կնիքն է դընում երեխայի դաստիարակության վրա։

Ծնողների մյուս խնդիրն է՝ կազմակերպել երեխաների արտադպրոցական ընթերցանությունը, որի նպատակն է երեխային սովորեցնել գրքից օգտվել, ինքնուրույն աշխատանքով հարստացնել իր գիտելիքները։ Ծնողները պետք է լեզվի և գրականության ուսուցիչների, դասղեկների կամ դպրոցի գրադարանի աշխատողների հետ միասին երե-

խայի համար ընտրեն համապատասխան դրականություն։

Ծնողների խնդիրն է երեխաների նկատմամբ ցուցաբերվող սերը զուգակցել պահանջկոտության հետ։ Ցավոք սրտի շատ ծնողներ կարծում են, թե երեխային կարելի է դաստիարակել քնքուշ, սիրալիր վերաբերմունքով։ Ծնողներից ոմանք էլ, մանավանդ մեկ երեխա ունեցողները, ծնողական սիրուց դրդված, ընդառաջում են երեխայի բոլոր ցանկություններին ու պահանջներին։ Նման մոտեցման հետևանքը լինում է այն, որ երեխայի մեջ կամակորություն է առաջանում, երեխան սկսում է կարգադրություններ անել, ընտանիքում իշխող դիրք գրավել։ Նման երևույթի տեղիք չտալու համար, փոքր հասակից երեխային պետք է հասկացնել, որ նրա ցանկություններն ու պահանջները ունեն որոշ սահման։

Ծնողը երեխային պետք է որոշակի հանձնարարություն տա, օրինակ, ծառերի, բանջարանոցի ծաղիկները ջրելը, լուսամուտների մաքրելը, տնային իրերի վրայից փոշի վերցնելը։ Այդ դեպքում երեխան իմանում է իր անելիքը, իսկ ծնողը հետևում է, որ երեխան ժամանակին կատարի տրված հանձնարարությունը։





Ծնողի պահանջկոտությունը չի բացառում երեխայի նկատմամբ ունեցած սերը, այլ բխում է այդ սիրուց, քանի որ ծնողի պահանջկոտությունը նպատակ ունի երեխայի մեջ դաստիարակել լավ հատկություններ։

Երեխային առաջադրվող պահանջները սերտորեն կապված են աշակերտական կանոնների հետ։ Այդ կանոնների կիրառման գործում առանձնապես անհրաժեշտ է դպրոցի և ընտանիքի միասնական աշխատանքը, փոխադարձ աջակցությունը։ Աշակերտական կանոնները, ծնողական ժողովներում քննարկելուց բացի, ինքնուրույն պետք է ուսումնասիրել, լավ իմանալ դրանց մեջ առաջադրված պահանջները և հետևել դրանց կատարմանը։

Կարևոր է նաև այն, որ ընտանիքի բոլոր մեծահասակ անդամները միասնական վերաբերմունք և մոտեցում ունենան երեխայի նկատմամբ։ Վնասակար է, երբ ծնողներից մեկը խիստ է վարվում երեխայի հետ, իսկ մյուսը չափից ավելի մեղմ, մեկը չի թույլատրում երեխային այս կամ այն բանը անել, իսկ մյուսը նրա բացակայությամբ թույլատրում է։ Մեկը երեխայից պահանջում է ռեժիմի, կանոնների ճիշտ կատարում, իսկ մյուսը՝ առիթ է տալիս նրա խախտմանը։ Երեխաների նկատմամբ ծնողների տարբեր,



հակասական մոտեցումը վնասակար հետևանքներ է ունենում։ Անհրաժեշտ է, որ ծնողներից կամ ընտանիքի մեծերից ոչ մեկը չմիջամտի և չփոխի մյուսի կարգադրությունը, իսկ երբ երեխան մեկին բողոքում է, մյուսը առաջինի կարգադրությունը պետք է ճիշտ համարի և ասի՝ դնա կատարիր։ Այդպիսի մոտեցումը երեխային ճիշտ ուղղություն կտա։

Երեխաների դաստիարակությունը ունի ոչ միայն պետական կարևոր նշանակություն, դրա նշանակությունը մեծ է նաև ծնողների անձնական կյանքում։ Ինչպես Ա. Ս. Մակարենկոն է ասել՝ թո՛ղ յուրաքանչյուր ծնող լավ հիշի, որ երեխաների լավ դաստիարակությունը դա ծնողների երջանիկ ծերությունն է, իսկ վատ դաստիարակությունը՝ նրանց ապագա վիշտն է։

---

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

# ԳՈՐԾԱՐԱՆԻ ԱԳԻՏԿՈԼԵԿՏԻՎԸ

Ս. ԹԱՓԱԼՅԱՆ

Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանի պարտկոմի քարտուղարի տեղակալ

Մեր գործարանի ագիտատորները սիստեմատիկաբար ագիտացիոն-մասսայական աշխատանք են կատարում գործարանի բանվոր-ծառայողների լայն շրջանում։

Ագիտատորների աշխատանքի հաջողությանը նպաստում է այն, որ նրանցից յուրաքանչյուրն ագիտացիոն պարապմունքներ է անցկացնում հենց այն տեղամասում, որտեղ ինքն է աշխատում։ Այդ հանգամանքի դրական կողմն այն է, որ ագիտատորը լավ իմանալով ինչպես այդ տեղամասի արտադրական հարցերը, այնպես էլ իր ունկնդիրներին, կարողանում է ագիտացիան դարձնել ավելի բովանդակալից ու մատչելի։

Գործարանի ագիտկոլեկտիվներում լուրջ ուշադրություն է նվիրվում, որ ագիտատորներն ավելի հմտորեն տիրապետեն ագիտացիոն աշխատանքի առավել նպատակասլաց

ձևերին ու մեթոդներին։ Այդ նպատակով, պարտկոմիտեի ղեկավարությամբ, ագիտկոլեկտիվները հաճախակի սեմինար պարապմունքներ և խորհրդակցություններ են ունենում։ Վերջերս, օրինակ, ագիտատորների համար կազմակերպվեց սեմինար պարապմունք, որի թեման էր «Ինքնարժեքի իջեցման ուղիները գործարանում»։ Բացի այդ, ագիտկոլեկտիվների սեմինարներում ագիտատորներն այս տարի լսել են առանձին զեկուցումներ աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրական նույն տարածությունից ավելի շատ հումք ստանալու, տեխնիկական պրոգրեսի և շատ ուրիշ թեմաների մասին։

Հետաքրքիր և արդյունավետ անցավ աշխատանքի և աշխատավարձի բաժնի վարիչ ընկ. Հ. Գրիգորյանի անցկացրած սեմինար պարապմունքը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման մասին։ Նա ցեխերից վերցրած կոնկրետ օրինակներով ագիտատորներին մանրամասն բացատրեց, թե գործարանում ինչպիսի հնարավորություններ կան աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։ Նա ագիտատորների ուշադրությունը բևեռեց այն բանի վրա, որ նրանք ամեն կերպ խրախու-



սեն ներքին ռեզերվները լիովին հայտնաբերող, էլեկտրաէներգիան, հումքը, օժանդակ նյութերը խնայողաբար օգտագործող բանվորներին։ Այնուհետև նա հանգամանորեն պարզաբանեց ցեխերի մեքենայացման, ավտոմատացման և նորագույն տեխնիկայի ներդրման հարցերը։ Նա օրինակներ բերեց, թե ինչպես վերջին ժամանակներում կրի ցեխը մեքենայացման ենթարկելու շնորհիվ, այնտեղ բանվորական աշխատանքը թեթևացել է և միաժամանակ զգալիորեն բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը։ Կամ, 1—3 ցեխի աղի նոր պահեստի պատրաստման և նույն ցեխի պետ Վ. Խուդոյանի, ինժեներներ՝ Գ. Սարգսյանի, Է. Մկրտչյանի ռացիոնալիզատորական առաջարկությունների շնորհիվ փոխվեցին վաննաները, որով և զգալիորեն բարձրացվեց աշխատանքի արտադրողականությունը։

Գործարանում ամեն տարի նորարարների առաջարկությունների ներդրումից ստացվում է 4—5 միլիոն ռուբլու օգուտ։ Միայն հինգերորդ հնգամյակում գործարանի նորարարների և ռացիոնալիզատորների առաջարկությունների ներդրումից տարեկան ստացվեց ավելի քան 27 միլիոն ռուբլու օգուտ։ Նա, որպես լավ ռացիոնալիզատորնե-

րի, օրինակ բերեց 30—30ա ցեխի բաժնի պետ Ա. Բիչախչյանին, գործարանի տեխնիկական բաժնի ավագ ինժեներ Է. Մկրտչյանին և շատ ուրիշների, որոնց առաջարկությունների արտադրության մեջ ներդնելուց գործարանն ստացել է մեծ գումարի օգուտ։

Ագիտատորները սեմինար պարապմունքից հետո հիշյալ փաստերը հաջողությամբ օգտագործեցին իրենց հերթական զրույցներում։

Ագիտկոլեկտիվում փորձի փոխանակման կարգով շատ հաճախ քննության են առնվում առանձին ագիտատորների զրույցներ, որ նրանք նախատեսել են առաջիկայում ունենալ ունկնդիրների հետ։

Օրերս պարտիական գրադարանում տեղի ունեցավ սեմինար պարապմունք, ուր քննարկվեց 30—30ա ցեխի ագիտատոր, ապարատավարների բրիգադիր Ս. Պետրոսյանի և կարբիդի ցեխի հերթափոխության պետ, ինժեներ Մ. Մարգոյանի ագիտացիոն աշխատանքի փորձը։ Այս ագիտատորները մանրամասն պատմեցին, թե իրենք ինչպես են քաղաքական ագիտացիան կապում արտադրական խնդիրների հետ, կազմակերպում սոցիալիստական մրցության ու սիստեմա-



տիկաբար օգնում բանվորներին ստանձնած պարտավորությունները հաջող կատարելու համար։ Ընկ. Մարգոյանը նշեց, թե ինչպես իրենց ցեխում մի ժամանակ մեկ անցքից կարբիդի բեռնաթափման մասին այն կարծիքն էին հայտնում, որ դա կոլեկտիվի ուժերով հնարավոր չէ կատարել։ Ցեխի պարտիական կազմակերպության և ադմինիստրացիայի ակտիվ օգնության շնորհիվ կոլեկտիվը կարողացավ ամենակարճ ժամանակամիջոցում կարբիդի վառարաններից բեռնաթափման ավելի քան 80—90 տոկոսը կատարել մեկ անցքից։

Ագիտացիոն զրույցները գաղափարական-քաղաքական բարձր մակարդակով անցկացնելու գործում ագիտատորներին մեծ օգնություն է ցույց տալիս պարտիական գրադարանը։ Պարտիական գրադարանը ունի համապատասխան քաղաքական-գեղարվեստական և գիտա-տեխնիկական գրականություն։ Ագիտատորներին հաճախակի կարելի է տեսնել գրադարանում քաղաքական, գեղարվեստական, գիտական և այլ գրքեր ընթերցելիս։

Պարտիական գրադարանում առանձնացված է հատուկ անկյուն, որտեղ միշտ լինում են թարմ թերթեր և ամսագրեր։

Որպեսզի գործարանի ագիտատորները միշտ իմանան, թե գործարանի կոլեկտիվը ինչպես է կատարում պետական պլանները և ստանձնած պարտավորությունները, ագիտատորի անկյունում, 10 օրը մեկ անգամ, փակցվում են տվյալներ պլանների կատարման, ռացիոնալիզատորական առաջարկների կիրառման, հումքի խնայողության և այլ ցուցանիշների մասին։ Այժմ այնտեղ փակցրված են տվյալներ այն մասին, որ գործարանի կոլեկտիվը 9 ամսվա պլանը կատարել է ժամկետից վեց օր շուտ, տնտեսելով 880 տոննա հումք, զգալի քանակությամբ էլեկտրաէներգիա և օժանդակ նյութեր։

Այնտեղ ցույց է տրված նաև, որ գործարանի նորարարները և ռացիոնալիզատորները արել են 1.080 առաջարկություն, որից 730-ը արդեն ներդրվել է արտադրության մեջ և գործարանին տվել է 3 միլիոն ռուբլու օգուտ։ Որպես լավագույն նորարարներ նշված են 30—30ա ցեխի փականագործների բրիգադիր Ա. Սարգսյանի, բաժնի պետ Վ. Ասատրյանի և շատ ուրիշների անունները։

Ագիտացիոն աշխատանքները լավ կազմակերպելու համար բոլոր ցեխերի ագիտատորներն ստանում են համապատասխան



քանակությամբ թերթեր և ամսագրեր։ Ցեխերում դրված են ցուցափեղկեր, որտեղ ամեն օր փակցվում են «Սովետական Հայաստան», «Կոմունիստ» և այլ թերթերի համարները։ Ագիտատորներին օգնելու նպատակով պարտիական գրադարանը մշակում է ագիտացիոն զրույցների թեմատիկ պլան, որի մեջ նշվում են այն հիմնական հարցերը, որոնց շուրջը պետք է կազմակերպվեն զրույցներ։

Օգոստոս ամսում առանձին ցեխերում նկատվեցին ցածրորակ արտադրանքի բացթողման դեպքեր։ Հաշվի առնելով այդ, ագիտատորները մի շարք զրույցներ անցկացրին՝ «Բարձրացնել թողարկվող արտադրանքի որակը, պայքարել գործարանի մարկայի պատվի համար», «Արտադրանքի ինքնարժեքի իջեցման մասին» և այլ թեմաներով։

Պարտիական կոմիտեն որոշակի աշխատանք է կատարել նաև ցուցադրական ագիտացիան կազմակերպելու ուղղությամբ։ Գործարանի ցեխերի աչքի ընկնող տեղերում փակցված են բազմաթիվ լոզունգներ, կոչեր, պլակատներ՝ հումքի խնայողության, սոցիալիստական մրցության կազմակերպման, 6-րդ հնգամյա պլանի կատարման մասին և այլն։

Ագիտկոլեկտիվների կողմից կազմակերպվող աշխատանքի արդյունքն այն եղավ, որ գործարանի կոլեկտիվը հաջողությամբ կատարեց 1956 թվականի 2-րդ եռամսյակի արտադրական պլանը և Համամիութենական սոցիալիստական մրցության մեջ գրավեց առաջին տեղը, ստանալով Քիմիական արդյունաբերության մինիստրության և Արհմիության Կենտկոմի փոխանցիկ դրոշը։

Այժմ ագիտատորները գործարանում ծավալում են նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցությունը և օգնում բանվորներին ստանձնած պարտավորությունները բարձր ցուցանիշներով կատարելու համար։

ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍՈՒՄ

---

## ՎՈՐՈՇԻԼՈՎԻ ԱՆՎԱՆ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՐԲԱԳԵՂՄ ՈՉԽԱՐԱԲՈՒԾՈՒԹՅՈՒՆԸ

Գրոզնու մարզի Կիզլյարի շրջանի Վորոշիլովի անվան կոլտնտեսությունը բազմաճյուղ տնտեսություն է։ Նա շատ վաղուց զբաղվում է նրբագեղմ ոչխարներ բուծելով։ 1956 թվականի հունվարի 1-ի տվյալներով կոլտնտեսությունն ուներ 10.855 ոչխար, այդ թվում՝ 8.284 նրբագեղմ ոչխար։ 1955 թվականին յուրաքանչյուր ոչխարից միջին հաշվով ստացվեց 6,04 կիլոգրամ բուրդ։

Կոլտնտեսության ընդհանուր եկամուտը կազմեց 2 միլիոն 619 հազար ռուբլի, այդ թվում ոչխարաբուծությունից ստացված եկամուտը՝ 1 միլիոն 585 հազար ռուբլի, կամ ընդհանուր եկամուտի 60 տոկոսը։ 1951 թվականի համեմատությամբ՝ ոչխարաբուծությունից ստացվող եկամուտը ավելի քան կրկնապատկվել է։

Կոլտնտեսության ոչխարաբուծական ֆեր-

*ման տոհմային է և մտնում է շրջանի նորա-գեղմ ոչխարների պետական տոհմաբուծարանի գործունեության դոտու մեջ։ Վերջին հինգ տարում կոլտնտեսականները աճեցրել և վաճառել են 629 էլիտային ու առաջին դասի տոհմային խոյեր։*

*Կոլտնտեսությունը բարձր բողատվության է հասել ոչխարաբուծական ֆերմայի աշխատողների բազմամյա համառ աշխատանքի շնորհիվ։*

*Հովիվները մեծ ուշադրություն են նվիրում ոչխարների արոտը ճիշտ կազմակերպելուն։*

*Ֆերմայի բոլոր արոտավայրերը բաժանված են հովվական բրիգադների միջև։ Յուրաքանչյուր բրիգադն արոտավայրերն արածեցնում է հերթականությամբ, ելնելով նրանց բուսականությունից և բույսերի որակից։ Հովիվներն աշխատում են ոչխարներին արածեցնել դանդաղ ընթացքով, որը նպաստում է արոտավայրի ավելի հավասարաչափ արածեցմանը։*

*Ոչխարներին արածեցնում են ամբողջ տարին, բացի ձմեռվա բուք ու բորան օրերից։ Այդպիսի օրերին ոչխարներին կերակրում են խոտով։*

*Ոչխարների ցեղի բարելավման գործում*



*մեծ դեր խաղաց արհեստական սերմնավորումը։ Արհեստական սերմնավորման համար օգտագործում են Գրոզնու ցեղի լավագույն խոյերը։*

*Ֆերմայում մեծ ուշադրություն է դարձվում խոյերի պահպանմանը և զուգավորման համար նրանց նախապատրաստմանը։ Խոյերը ամբողջ տարվա ընթացքում պահվում են առանձին խմբերով։ Զուգավորումից երկու ամիս առաջ նրանց սկսում են ուժեղ կերակրել, տալով խտացված կերեր, հավի ձու, կաթ։ Զուգավորման նախապատրաստում են նաև մաքիներին, նրանց հասցնելով միջակից բարձր գիրության։*

*Այս բոլոր միջոցները նպաստում են ոչխարների զուգավորումը հաջողությամբ անցկացնելու։*

*Կոլտնտեսության վարչությունը մաքիների հոտի հովիվներին ժամանակին տրամադրում է կերեր, սարքավորում և նյութեր, որոնք անհրաժեշտ են ոչխարների ծինն անցկացնելու համար։*

*Կոլտնտեսությունը վերջին տարիներս ոչխարների գլխաքանակը բարելավելու համար մաքիների առաջին զուգավորումը կատարում է երկու և կես տարեկան դառնալուց հետո։ 1954 թվականին երկու և կես տարեկան հա-*

սակում զուգավորվեց 250 ոչխար, իսկ 1955 թվականին՝ 500 ոչխար։

1955 թվականից ֆերմայի հովիվ Ի. Շապովալովի մեկ հոտում անցկացվեց ոչխարների վաղ զուգավորում։ Վաղ ծնի համար պատրաստվեց մեծ ու ընդարձակ, տաք ու լուսավոր ոչխարանոց, անհրաժեշտ քանակությամբ խոտ, խտացված և հանքային կերեր, ինչպես նաև ցամքարի ծղոտ։

Կոլտնտեսության ձեռք բերած հաջողությունները բացատրվում են նաև նրանով, որ ոչխարաբուծական ֆերմայում աշխատում են փորձված և իրենց գործը սիրող հովիվներ։ Օրինակ, հովիվ Ի. Շապովալովի բրիգադան անցյալ տարի յուրաքանչյուր նրբագեղմ ոչխարից ստացավ 6,4 կիլոգրամ բուրդ և յուրաքանչյուր 100 մաքրից ստացավ ու մինչև մորից անջատելը պահպանեց 131 գառ։ Ավագ հովիվ Մ. Նեստերենկոն իր բրիգադայով յուրաքանչյուր նրբագեղմ ոչխարից ստացավ 5,7 կիլոգրամ բուրդ և յուրաքանչյուր 100 մաքրից աճեցրեց 126 գառ։

Այս բոլոր ցուցանիշների համար կոլտնտեսությունը 1956 թվականին մասնակցեց Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին։



# ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ ԵՆ ԻՐԵՆՑ ԻՐԱՎՈՒՆՔՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Վ. ՌՈԴԻՈՆՈՎ

Գնալով ավելի լայն ծավալ է ստանում գործադուլային շարժումը կապիտալիստական երկրներում։ 1956 թվականը, ինչպես և նախորդ տարիները, նշանավորվում է իրենց կենսական իրավունքների ու շահերի պաշտպանության համար աշխատավորների մասսայական ելույթներով։ Բանվոր դասակարգի պայքարում առավել տարածված ձևը հանդիսանում է գործադուլը։ Աշխատավորները պահանջում են բարձրացնել աշխատավարձը, բարելավել սոցիալական ապահովագրությունը։ Էլ ավելի լայն թափ է ստանում տնտեսական ու սոցիալական զարգացման, ընդհանուր խաղաղության պաշտպանման համար ժողովրդական մասսաների մղած պայքարը։

☆ Այս տարի խոշոր գործադուլ տեղի ունեցավ Ամերիկայի Միացյալ Նահանգներում։

Համարյա ամբողջ հուլիս ամսվա ընթացքում գործադուլ արեցին մետալուրգիական արդյունաբերության 650 հազար բանվորներ։ Գործադուլին նախորդեցին նոր կոլեկտիվ պայմանագրեր կնքելու մասին բանակցությունները, որոնք տեղի ունեցան պրոֆմիության ներկայացուցիչների և գործարանատերերի միջև։ Բանակցությունների ընթացքում ձեռնարկատերերն այնպիսի պայմաններ առաջադրեցին, որոնք անընդունելի էին բանվորների համար և այդպիսով հենց իրենք պրովոկացիաների դիմեցին, որպեսզի բանվորները գործադուլի դիմեն։ Բոլոր հիմքերը կան ենթադրելու, որ ձեռնարկությունների տերերը շահագրգռված էին պողպատաձուլական գործարանների աշխատանքի դադարեցման մեջ, որպեսզի լիկվիդացնեին կուտակված մետաղի մեծ պաշարները և ապա, բարձրացնեին պողպատի գները։

Բանվորները, որոնք ստիպված էին գործադուլի դիմել, այն անցկացրին շատ կազմակերպված։ Միայն այն բանից հետո, երբ հուլիսի վերջերին համաձայնեցվեց նոր կոլեկտիվ պայմանագիրը, պողպատ ձուլողները վերադարձան աշխատանքի։ Նրանք հասան աշխատավարձի բարձրացման, գոր-



ծազրկության համար նպաստների չափերի և արձակուրդների ավելացմանը ու մի շարք այլ զիջումների։

Օգոստոսի սկզբին տեղի ունեցավ ալյումինի արդյունաբերության 28 հազար բանվորների գործադուլը, որի հետևանքով ևս ձեռք բերվեց աշխատավարձի ավելացում։

Հատկապես պետք է նշել երկարատև գործադուլները. 154 օր տևեց «Վեստինգհաուզ էլեկտրիկ կորպորեյշն»-ի 10 գործարանների բանվորների գործադուլը։ 156 օր գործադուլ արեցին այդ նույն կոմպանիայի 30 ուրիշ գործարանների բանվորները։ Ամերիկայի Միացյալ Նահանգների բանվորական շարժման վերջին 20 տարվա ընթացքում իր տևողությամբ և մասնակիցների թվով դա խոշորագույն գործադուլ էր։

☆ Այս տարի մեծ թափ է ստացել Անգլիայի աշխատավորության շարժումը հանուն իրենց նյութական դրության բարելավման։ Աշխատավարձի բարձրացման մասին պահանջ առաջադրեցին մի քանի միլիոն բանվորներ և ծառայողներ։ Այդ պահանջը պաշտպանություն էր գտնում պրոֆմիությունների դիմումների, պետիցիաներ ուղարկելու, ցույցեր, միտինգներ և գործադուլներ անցկացնելու մի-

ջոցով։ Աշխատավորների եռանդագին գործողությունների շնորհիվ հաջողվեց հասնել մոտ 5 միլիոն մարդու աշխատավարձի բարձրացման։ Ճիշտ է, աշխատավարձի այդ բարձրացումը այնքան էլ նշանակալից չէր, որպեսզի ծածկեր թանկության աճման պատճառով աշխատավորների կենսամակարդակի իջեցումը, բայց և այնպես նա հանդիսացավ Անգլիայի բանվոր դասակարգի կարևորագույն հաղթանակը։ Հատկապես սուր բնույթ կրեց անգլիական տպագրիչների պայքարը։ Պոլիգրաֆ արդյունաբերության մեջ բանվորների և ձեռնարկատերերի միջև կոնֆլիկտը տևեց մի քանի շաբաթ։ Ի վերջո տպարանների 70 հազար բանվորներ հասան աշխատավարձի բարձրացման։

1956 թվականը Անգլիայում նշանավորվում է բանվոր դասակարգի համերաշխության խոշոր գործադուլներով։ Այդպիսի գործադուլները լուրջ նախազգուշացում են հանդիսանում ձեռնարկատերերի համար, որոնք չեն ցանկանում բանվորական կոլեկտիվի հետ հաշվի նստել։ Ավելի քան երկու շաբաթ գործադուլ էին անում Ուելսի և Դերբիշիրի հանքափորները, որոնք բողոքում էին իրենց մի քանի ընկերներին աշխատանքից



ազատելու դեմ։ Երկու շաբաթից ավել տևեց նաև Կովենտրիի ավտոգործարանների 11 հազար բանվորների գործադուլը, որոնք նույնպես դիմադրում էին իրենց 3 հազար ընկերներին աշխատանքից ազատելու դեմ։ Օգոստոսի 3-ին հաջողությամբ ավարտվեց հուլիսի 27-ին Դագենեմ քաղաքում, Ֆորդի գործարանում սկսված գործադուլը. կոմպանիայի կողմից ազատված 2400 բանվորներ նորից վերականգնվեցին աշխատանքի։

Մեծ թվով գործադուլներ տեղի ունեցան այս տարի Ֆրանսիայում։ Հուլիս ամսին «Յումանիտե» թերթը հաղորդագրություն էր տպել, որից երևում էր, որ մայիս և հունիս ամիսներին միայն Սենա դեպարտամենտում իրենց նյութական դրության բարելավման համար ակտիվ պայքար էին մղում արդյունաբերության քսան ճյուղերի բանվորներ։ Ընդհանուր առմամբ Փարիզի շրջանի 287 ձեռնարկությունների բանվորներ մասնակցում էին իրենց տնտեսական պահանջների բավարարման և Ալժիրում խաղաղության հաստատման համար մղվող պայքարին։ Այդ ժամանակամիջոցում անց է կացվել 248 կարճատև գործադուլ։

Ուրախալի է նշել, որ զանազան պրոֆմիութենական միավորումների հարուստ

ֆրանսիական բանվորները վերջին ժամա-
նակներում ավելի հաճախակի են համատեղ
հանդես գալիս։ Շատ դեպքերում աշխա-
տանքի համաշխարհային կոնֆեդերացիա-
յի, կամ «Ֆորս ուվրիերի» կամ էլ ֆրան-
սիական քրիստոնյա աշխատավորների
կոնֆեդերացիայի մեջ մտնող պրոֆմիու-
թենական կազմակերպությունները համա-
տեղ են պաշտպանում բանվորների պա-
հանջները։ Օրինակ, Բորդո քաղաքի մեքենա-
շինական ձեռնարկությունների 5 հազար
բանվորներ դիմեցին կարճատև գործադուլի,
պահանջելով բարձրացնել աշխատավարձը։
Նա անցկացվեց Պրոֆմիությունների համաշ-
խարհային կոնֆեդերացիայի, «Ֆորս ուվ-
րիերի» և ֆրանսիական քրիստոնյա աշխա-
տավորների կոնֆեդերացիայի մեջ մտնող
պրոֆմիությունների կոչով։ Մի քանի օր
տևեց Պա-դե-Կալե դեպարտամենտի 6 հա-
զար հանքափորների գործադուլը, որը
նույնպես անցկացվեց երեք պրոֆմիու-
թյունների նախաձեռնությամբ։

Ֆրանսիայի բանվորական շարժման հա-
մար բնորոշ են նաև բանվորական մասսա-
ների ելույթները ի պաշտպանություն Հյու-
սիսային Աֆրիկայի ժողովուրդների իրա-
վունքների։



Ալժիրում խաղաղություն հաստատելու
օգտին առանձնապես հանդես եկան Փա-
րիզի շրջանի շատ ձեռնարկությունների
բանվորներ։ Ալժիրին անկախություն տալու
պահանջով գործադուլներ անցկացվեցին
Ֆրանսիայի մի շարք շրջաններում։ Հուլիսի
5-ին ընդհանուր գործադուլ տեղի ունեցավ
Ալժիրում։

☆ Մասսայական բնույթ են կրում գործա-
դուլներն Իտալիայում։ Հուլիսի 24-ին տեղի
ունեցավ երկաթուղայինների ընդհանուր
գործադուլ, որն ընդգրկեց մոտ 200 հազար
մարդ։ Այդ գործադուլին նույնպես, ինչպես
Ֆրանսիայում, մասնակցեցին զանազան
պրոֆմիությունների բանվորներ։ Դա Իտա-
լիայի աշխատավորների համատեղ ելույթնե-
րի միակ օրինակը չէ։ Երկրի երեք խոշո-
րագույն պրոֆմիութենական միավորումնե-
րի՝ Աշխատանքի ընդհանուր իտալական
կոնֆեդերացիայի, Իտալիայի պրոֆմիու-
թյունների իտալական կոնֆեդերացիայի և
Աշխատանքի իտալական միության նախա-
ձեռնությամբ ամռան ընթացքում մի քանի
անգամ պայքարի ելան գյուղատնտեսական
բանվորները։ Գործադուլավորները պահան-
ջում էին կնքել նոր կոլեկտիվ պայմանա-
գիր, բարձրացնել աշխատավարձը և բարե-

լավել սոցիալական ապահովագրության սիստեմը։ Բատրակների և գյուղատնտեսական բանվորների առաջին համազգային գործադուլը՝ ի պաշտպանություն այդ պահանջների, տեղի ունեցավ հունիսի 14-ին և 15-ին։ Հունիսի 28-ին տեղի ունեցավ աշխատավորների նոր ելույթ, որին մասնակցում էր մոտ չորս միլիոն մարդ։ Մի շարք պրովինցիաներում հայտարարվեց 24 ժամյա գործադուլ, իսկ Պո գետի հովտում՝ ավանց որոշակի ժամկետի։

Քանի որ կառավարությունը և կալվածատերերը չէին համաձայնվում գյուղատնտեսական բանվորների պահանջներին, ապա Պոյի հովտի գործադուլավոր բանվորներին հուլիսի 6-ին նորից միացան մոտ երեք միլիոն գյուղատնտեսական բանվորներ։ Այս անգամ ընդհանուր գործադուլը տևեց 48 ժամ։ Դրա հետևանքով կառավարությունը և կալվածատերերի միավորումը պարտավորվեցին մոտակա ժամանակներում բանակցություններ սկսել աշխատավորների պահանջների բավարարման հարցի մասին։

☆ Մեծ թվով գործադուլներ են տեղի ունենում Ճապոնիայում։ Այստեղ աշխատավորները իրենց տնտեսական շահերի համար պայքարելու հետ միասին հանդես են



գալիս նաև ամերիկյան զորքերի կողմից երկրի օկուպացումը դադարեցնելու համար։ Հուլիսի 31-ին Տացիկավայում (Տոկիոյի մոտ) ամերիկյան ավիաբազայում զբաղված 7,5 հազար բանվորներ անցկացրին 24 ժամյա գործադուլ։ Օգոստոսի 26-ին ամերիկյան ռազմական բազաների 30 հազար բանվորներ գործադուլ սկսեցին։ Տառացիորեն մի քանի ժամ անց նրանց միացան մյուս ձեռնարկությունների բանվորները և օգոստոսի 27-ին արդեն գործադուլ էր անում 150 հազար մարդ։

☆ Բանվորական շարժումն ընդլայնվում է Լատինական Ամերիկայի երկրներում։

☆ Բանվոր դասակարգը կազմակերպված պայքար է մղում Նորվեգիայում, Դանիայում, Հարավային Կորեայում, Տաիլանդում…

☆ Գաղութային և կախյալ երկրներում նյութական պայմանների բարելավման համար աշխատավորների մղած պայքարը միաձուլվում է անկախության համար, օտարերկրյա կապիտալի բռնության դեմ մղվող պայքարին։

# Ի՞ՆՉ ԿԱՐԴԱԼ ԵՐԵԽԱՆԵՐԻ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Մ. Ի. ԿԱԼԻՆԻՆ. «Երիտասարդության մասին»։

Այս գրքում Սովետական պետության և Կոմունիստական պարտիայի նշանավոր գործիչ Մ. Ի. Կալինինը հանգամանորեն կանգ է առնում դաստիարակության հարցերի վրա։ Նա մատնանշում է, որ երիտասարդների և պատանիների մեջ ծնողները առաջին հերթին պետք է սեր զարթեցնեն դեպի աշխատանքն ու ստեղծագործությունը։ Մարդու կյանքի գլխավոր հատկանիշը ընդհանուրի շահերի համար ակտիվ գործունեությունն է։ Առանց այդ հատկության չի կարող նոր սոցիալիստական հասարակության քաղաքացին լինել օրինակելի։

Մ. Ի. Կալինինը իր գրքում միաժամանակ հանգամանորեն պարզաբանում է պոլիտեխնիկ դաստիարակության խնդիրները։ Նա նշում է, որ կոմունիզմ կառուցող նոր մարդը պետք է լինի ժամանակակից գիտության հիմունքներին տիրապետող, դա անհրաժեշտ է կյանքը ավելի ճանաչելու և երկրի արտադրողական ուժերն է՛լ ավելի զարգացնելու համար։

Մ. Ի. ԿԱԼԻՆԻՆ. «Կոմունիստական դաստիարակության մասին». (Հատընտիր ճառեր և հոդվածներ)։



Այս աշխատության մեջ Մ. Ի. Կալինինը ելնելով իր կյանքի բազմահարուստ փորձից, շարադրում է նոր մարդկանց կոմունիստական դաստիարակության խնդիրները։ Նա ծնողներին և սովետական երիտասարդներին տալիս է շատ արժեքավոր խորհուրդներ։

Մ. Ի. Կալինինն առաջնակարգ նշանակություն է տալիս դաստիարակության գործը կյանքի կոնկրետ խնդիրների հետ կապելու հանգամանքին։ Ինչպես գրքի հեղինակն է հաստատում, ծնողը երեխային չպետք է լոկ անառարկայական կանոններ սովորեցնի։ Ծնողը պետք է իր զավակին դաստիարակի միայն կյանքից վերցրած կոնկրետ փաստերի հիման վրա։ Երեխաներին պետք է ներշնչել դեպի կոնկրետ գործունեություն, նրանց կապելով կյանքի հետ։ Ծնողական դաստիարակությունը, ինչպես ասում է Մ. Ի. Կալինինը, իր նպատակին չի ծառայի, եթե նա միակողմանի է և իր առջև խնդիր չի դնում բազմակողմանիորեն զարգացած կոմունիստական հասարակության քաղաքացի պատրաստել։ Սոցիալիզմի գործին ծառայելու համար պատրաստվող մարդը պետք է դեռ իր պատանեկական հասակից կոփվի առօրյա աշխատանքի մեջ առաջացած դժվարությունների հաղթահարելու համար։ Այդ պատճառով էլ նրա դաստիարակությունը պետք է խարսխվի կյանքը նոր հիմունքներով կառուցելու գիտակցությունն ամրապնդող սկզբունքի վրա։

Ա. Ս. ՄԱԿԱՐԵՆԿՈ. «Դասախոսություններ երեխաների դաստիարակության մասին»։

Այս գրքի մեջ սովետական նշանավոր մանկավարժ Ա. Ս. Մակարենկոն արժեքավոր դիտողություններ է անում դաստիարակության խնդիրների մասին։ Նա ուշագրավ խորհուրդներ է տալիս մեր ծնողներին, թե ընտանիքում երեխաներին ինչպես պետք է դաստիարակել։ Նա շարադրում է իր մանկավարժական հայտնի հայացքները, ուր պարզաբանվում է այն միտքը, որ երեխաների նորմալ ու հետևողական դաստիարակության գործում վճռական դերը պատկանում է ծնողներին։ Ինչպես Ա. Ս. Մակարենկոն է փաստերով հաստատում, ծնողական դաստիարակության գլխավոր մեթոդը պիտի լինի կոլեկտիվիզմը։ Միայն ընտանեկան համերաշխ կոլեկտիվ ստեղծելու միջոցով կարելի է երեխաներին տալ ճիշտ դաստիարակություն։ Գրքի հեղինակը մատնանշում է, որ ընտանեկան կոլեկտիվի ստեղծումը, անկախ իր մեծությունից, հնարավոր է դարձնում երեխաների մեջ դաստիարակել պիտանի հատկություններ։ Ընտանեկան կոլեկտիվի բովում դաստիարակված երեխան հետագայում ավելի լավ քաղաքացի է դառնում, նա իր ընտանեկան կոլեկտիվի միջոցով ճանաչում է հասարակական ավելի լայն կոլեկտիվը, որը կոչվում է սոցիալիստական հասարակություն։

Կ. Դ. ՈՒՇԻՆՍԿԻ. «Մանկավարժական ընտիր երկեր»։



Ռուս նշանավոր մանկավարժ Ուշինսկու այս ժողովածուն կազմում է նրա գրական ժառանգության լավագույն մասը։ Հեղինակի տված մանկավարժական խորհուրդները մեծ չափով օգնում են մեր ծնողներին օրինակելիորեն կազմակերպելու երեխաների դաստիարակության գործը։ Հեղինակը մանկավարժության հիմնական նպատակը համարում է երեխաներին հասարակության ընդհանուր շահերին նվիրված լինելու ոգով դաստիարակելը։ Ուշինսկին ընդգծում է, որ երեխան պիտի մեծանա, իր մեջ ձգտում ունենալով դեպի բարին, ազնվությունը և ճշմարտությունը։ Հեղինակը դաստիարակների ուշադրությունը առանձնապես հրավիրում է այն բանի վրա, որ նրանք երեխաների մեջ սեր արթնացնեն դեպի աշխատանքը։ Նա ապացուցում է, որ չի կարող քաղաքացին լիարժեք լինել, եթե նրա մեջ բուռն սեր չկա դեպի աշխատանքը։ Ուստի ծնողական դաստիարակության առաջնահերթ խնդիրն է՝ երեխայի մեջ աճեցնել աշխատասիրություն։

Ուշինսկին իր աշխատության մեջ մանրամասնորեն կանգ է առնում բարոյականության խնդիրների վրա։ Նա բարոյականությունը համարում է նվիրվածությունը ընդհանուրի գործին։ Հեղինակը պահանջում է, որ ծնողը երեխայի մեջ պատվաստի հայրենասիրություն, հումանիզմ, սկզբունքների և համոզմունքների կայունություն, ճշմարտասիրություն, անկեղծություն և անսասան կամք ու խիզախություն։

«Խ. ԱԲՈՎՅԱՆԸ ՄԱՆԿԱՎԱՐԺ»

Այս ժողովածուում ամփոփված են հայ նոր գրականության հիմնադիր և լուսավորիչ Խաչատուր Աբովյանի մանկավարժական աշխատությունները, որոնք այժմ էլ խոշոր նշանակություն ունեն երեխաների ընտանեկան դաստիարակության համար։ Հայ մեծ գրողը մատնանշում է, որ ծնողը երեխաների մեջ պետք է արմատավորի մեծ սեր դեպի մայր ժողովուրդը— նրա գրականությունը, պատմությունը և ազգային տրադիցիաները, ելնելով երեխաների տարիքային առանձնահատկություններից։ Աբովյանն առանձին ուժով շեշտում է, որ երեխան պետք է դաստիարակվի առաջին հերթին աշխատասիրության ոգով։ Ֆիզիկական դաստիարակությունը նույնպես, ըստ հայ մեծ գրողի, ունի վճռական նշանակություն։ Երեխան պետք է աճի ֆիզիկապես ամուր և առողջ։ Նրա մեջ ծնողը միշտ պետք է սեր արթնացնի դեպի հասարակական գործունեությունը։ Աբովյանը երեխայի յուրաքանչյուր տարիքի համար առաջարկում է դաստիարակության և ուսուցման առանձին եղանակներ։

---

# ՍՈՎԵՏՆԵՐԻ ՊԱԼԱՏԸ

ՍՍՌՄ Մինիստրների Սովետը վերջերս որոշում ընդունեց Վ. Ի. Լենինի հուշարձանի՝ Սովետների պալատի լավագույն նախագծի համամիութենական մրցանակաբաշխություն անցկացնելու մասին։ Ինչպես հայտնի է, այդ հոյակապ կոթողի շինարարությունը, որը կատարվում էր դեռևս 20 տարի առաջ կազմված նախագծի համաձայն, ընդհատվեց 1941 թվականին՝ Հայրենական Մեծ պատերազմի սկզբներին։

Այժմ պալատը նախագծողներին նոր պահանջներ են առաջադրվում։

Այդ մոնումենտալ շինությունը, հանդիսանալով մեծ Լենինի հուշարձանը, պետք է արտահայտի կոմունիզմի կառուցման դարաշրջանի վեհությունը։ Իր կառուցման նպատակով նա պետք է հարմար լինի մեծ թվով մարդիկ ընդունելու համար։ Այդ պալատում գումարվելու են ՍՍՌՄ Գերագույն Սովետի, ՌՍՖՍՌ Գերագույն Սովետի սեսիաները և նիստերը, համագումար-

ներ, տեղի են ունենալու զանազան կոնգրեսներ, ժողովներ, խորհրդակցություններ, տոնահանդեսներ և մասսայական քաղաքական ու կուլտուրական այլ ձեռնարկումներ։

Այդ նկատառումներով էլ Սովետների պալատը պետք է բաղկացած լինի մեծ դահլիճից, ՍՍՌՄ Գերագույն Սովետի պալատների՝ Միության Սովետի և Ազգությունների Սովետի անջատ նիստերի դահլիճներից, սեսիաների, կոնգրեսների, համագումարների և մասսայական քաղաքական ու կուլտուրական այլ ձեռնարկումների անցկացման ժամանակ տեխնիկական ապարատի և հանձնաժողովների աշխատասենյակներից, կառավարական ընդունելությունների դահլիճներից, վարչա-տնտեսական և տեխնիկական սենյակներից։

Մեծ դահլիճը պետք է ունենա 4.600 տեղ։ Դահլիճում կլինեն առանձին սենյակներ՝ նախագահության, դիվանագիտական կորպուսի, սովետական և օտարերկրյա ժուռնալիստների, արտիստների և երաժիշտների համար, հանդերձարանի նախասրահ և սպասարկու սենյակներ։

Այս դահլիճը իր բոլոր կից սենյակների հետ միասին ունենալու է 14.300 քառակուսի մետր ընդհանուր տարածություն։ Դահլի-



ճում միաժամանակ պետք է ապահովված լինի լավ տեսանելիությունը և լսելիությունը։

Պառլամենտական դահլիճներին համապատասխան պետք է նախագծվեն ՍՍՌՄ Գերագույն Սովետի Միությունների և Ազգությունների Սովետների առանձին դահլիճները՝ յուրաքանչյուրը 1.500 տեղով։ Այս դահլիճները նույնպես պետք է ունենան նախագահության, դիվանագիտական կորպուսի, ժուռնալիստների սենյակներ, որոնք երկու դահլիճների հետ միասին ունենալու են 8.200 քառակուսի մետր տարածություն։

Իսկ զանազան սեսիաների, կոնգրեսների, համագումարների և մասսայական այլ ձեռնարկումների անցկացման ժամանակ թարգմանիչներին, մեքենագրուհիներին, լրագրային աշխատողներին և տեխնիկական այլ աշխատողներին սպասարկելու համար հատկացվող սենյակների ընդհանուր տարածությունը կազմելու է 3.000 քառակուսի մետր։

Կառավարական ընդունելությունների համար նախատեսվելու են մեկ շքադահլիճ, կամ մի քանի դահլիճներ՝ իրենց սպասարկու սենյակներով, որոնք պետք է ունենան 4.100 քառակուսի մետր տարածություն։ Այս դահլիճներում կանցկացվեն նաև զանազան տոնահանդեսներ։



Սովետների պալատի գեղարվեստական և տեխնիկական սենյակները ունենալու են 6.400 քառակուսի մետր տարածություն։

Այս հսկա շինության ընդհանուր ծավալը կազմելու է առնվազն 36.000 քառակուսի մետր։

Սովետների պալատի հոյակապ շինարարությունը պետք է այնպես նախագծվի, որպեսզի իր գեղեցիկ սիլուետներով հարմար կերպով ներդաշնակվի կողքի շինությունների հետ և, առանձնապես, հնադարյան Կրեմլի հետ, որի հարևանն է դառնալու նա։

Այդ վիթխարի կառուցվածքի իրականացումը թեև կապված է տեխնիկական շատ դժվարությունների հետ, բայց մեր ճարտարապետների, կառուցող ինժեներների, տեխնիկների և բանվորների ուժերից վեր չէ։ Զինված հայրենական շինարարական տեխնիկայով և կոնստրուկցիաներով, մեր հըմուտ և փորձառու շինարարները մեկ անգամ չէ, որ ցույց են տվել իրենց բարձր վարպետությունը։ Դրա վառ ապացույցն է հանդիսանում Մոսկվայի համալսարանի, Վարշավայի գիտության և կուլտուրայի բարձրաբերձ պալատի, Լուժնիկիի սպորտային կառուցվածքների կոմպլեքսի, վիթխարի հիդրոէլեկտրակայանների շենքերի



շինարարությունը։ Կանցնեն մի քանի տարիներ և սիրելի առաջնորդի՝ Վ. Ի. Լենինի անունը կրող հոյակապ հուշարձանը վեր կխոյանա, որպես մեր օրերի վեհությունը մարմնավորող հավերժական մի կոթող։

---

## СОДЕРЖАНИЕ

Стр.

### МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД



### ИЗ ОПЫТА АГИТАЦИОННОЙ РАБОТЫ



### НА ВСЕСОЮЗНОЙ СЕЛЬСКОХОЗЯЙСТВЕННОЙ ВЫСТАВКЕ



### МЕЖДУНАРОДНЫЕ ТЕМЫ



### СПРАВОЧНЫЙ ОТДЕЛ



---

Պտ. խմբագիր՝ Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

ՄԻՔԱՅԵԼ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ— «Վավերագրերի ժողովածու»։ Գինը 10 ռ. 65 կ., 392 էջ, տիրաժ 2.000։

ԳՈՒՐԳԵՆ ՀՈՎՆԱՆ— «Ն. Ա. Նեկրասովը և հայ պոեզիան»։ Գինը 4 ռ. 80 կ., 256 էջ, տիրաժ 3.000։

ՀՄԱՅԱԿ ՍԻՐԱՍ— «Երկեր»։ Գինը 12 ռ. 65 կ., տիրաժ 10.000։

Հ. ՎԵՍՊԵՐ— «Առաջին աշունը»։ Գինը 4 ռ., 171 էջ, տիրաժ 3000։

ՀԵՆՐԻ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ— «Հայ փիլիսոփայական մտքի պատմություն», Հատոր I։ Գինը 7 ռ. 35 կ., 572 էջ, տիրաժ 3000։

---

**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 19** **1956 г.**

ՎՖ 06528 Պատվեր 796 Տիրաժ 8.335

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 50 կոպ.